# Ի՞ՆՉ Կ'ԸՍԷ ԾԵՐԱԿՈՅՏԻՆ ՆԱԽԱԳԱՀԸ

Չորրորդ վկան, Ժիւլ Ժանէնի, Ծերակոյտին նախագահը, այժմ անպաշտօն նախարար, որ 81 տարեկան է, իր յայտարարութիւնն ըրաւ նստելով բազկաթոռի մը վրայ: Իր կարծիքով, եթէ զինադադար կնքուէր, կառավարութիւնը պէտք էր քաշուէր Հիւս. Ափրիկէ, որպէսզի կարենար ազատօրէն գործել եւ ի հարկին շարունակել պատերազմը: Շօթան կը պնդէր որ հասկնան Գերմանիոյ պայմանները: Առտու մը կ'իմանայ որ Փօլ Ռէյնօ հրաժարած է, Փէթէն կառավարութեան գլուխը անցած եւ զինադադար խնդրած: «Պ. Էռիօ եւ ես իրար անցանք: Այլեւս Գերմանիոյ պայմանները հարցնելու խնդիր չկար: Ամբողջական անձնատրութիւն էր: Այս կացութիւնը առ նուազն կը ստիպէր որ Գերմանիոյ հետ բանակցող նախարարները ազատ մարդիկ ըլլային, ուստի ստիպողական կը դառնար կառավարութեան փոխադրութիւնը: Փէթէն միշտ կ'ընդդիմանար, յայտարարելով,— Ես Ֆրանսայէն դուրս պիտի չելլեմ»:

Պ. Ժանէնի Փէրփինեան գացած ատեն, կը ձերբակալուի Թուլուզի մէջ, նահանգապետին կողմէ: Քառասուն եւ ութ ժամ վերջը զինադադարը ստորագրուած էր, կառավարութիւնն ալ Վիշի փոխադրուած: Յուլիս 4ին ինք ալ Վիշի կը հասնի: Յաջորդ օրը Լավալ կը պահանջէ գումարել Ազգ. Ժողովը: Ինք մերժեց, առարկելով թէ չի կրնար արագօրէն հրաւիրել Ծերակոյտը: Յաջորդ օրը հրամանագիր մը նիստի կը հրաւիրէր Ազգ. Ժողովը: Վկան խոստովանեցաւ թէ շատ բարեացակամ խօսքեր ըրած էր Փէթէնի համար, Ծերակոյտին մէջ: Ինք Փէթէնը կը ճանչնար 1917էն, գիտէր որ յոռետես է եւ նահանջական. բայց 1918ի յիշատակը, Վէրտէօնի յաղթանակը ջնջած էր այդ ամէնը: Եւ յետոյ, կրնայի՞ն ուրիշ մէկն ընտրել: «Բոլոր աչքերը Փէթէնի ուղղուած էին, իբրեւ տեսակ մը փրկութեան խարսխանիշ որուն կ'երկարէին բոլոր ձեռքերը, միակ անունը որ կրնար միութիւն ստեղծել: Լավալ ժողովները կը բազմապատկէր Վիշիի մէջ. կ'ուզէր քուէ ստանալ առանց վիճաբանութեան: Երբ նիստը բացի, լաւ կազմակերպուած ձայներ ազդարարեցին թէ պէտք էր շուտ քուէարկել, թէ ընդհանուր վիճաբանութիւնը աւելորդ է: Եւ այսպէս ոչ մէկը կրցաւ բացատրել իր քուէն: Կորզուած, տեսակ մը բռնի քուէարկութիւն մըն էր որ տեղի ունեցաւ եւ հետեւանքը եղաւ ճակատագրական: Ժամը 17 — 19 լիազօրութիւնը քուէարկուած էր»:

### ՊԱՏԱՆԴՆԵՐՈՒ ԳՆԴԱԿԱՀԱՐՈՒԹԻՒՆԸ

Այս վայրկեանէն անդին Ծերակոյտին նախագահը կը դառնայ հեռաւոր վկայ մը կառավարութեան գործունէութեան: Բայց ամէն անգամ որ շփում կ'ունենար կառավարութեան պետին հետ, աւելի կը համոզուէր թէ ան միացած է Գերմանիոյ:

— «Երբ սկսան պատանդներու գնդակահարութիւնները (1941 Հոկտեմբեր), որ արգիլուած է միջազգային պայմանագիրներով, հարցուցի թէ ի՛նչ ձեռնարկ ըրած են առաջքը առնելու համար: Բուռն կերպով բողոքեցի զինադադարի պայմաններուն ծանր բռնաբարումներուն դէմ: Նամակ մը գրեցի մարէշալ Փէթէնի, հարցնելու համար թէ զինադադարը գոյութիւն ունի՞, եւ եթէ ոչ, թող ըսէր երկրին: Իբրեւ պատասխան ստացայ նամակ մը որ պարզապէս ցաւ կը յայտնէր, եւ կ'ըսէր թէ ամէն բան եղած է որպէսզի նոր գնդակահարութիւններ չըլլան: Վհատեցուցիչ էր այս պատասխանը: Այլեւս նամակ չգրեցի: Մնաց որ, մեզ բռնի տեղափոխած էին եւ 1942 Օգոստոսին օրէնք մը կը ջնջէր Ծերակոյտին եւ Երեսփ. Ժողովին դիւանները: Այսպէս վերջ կը տրուէր իմ պաշտօնիս»:

Գլխաւոր փաստաբանը, Փայէն, բողոքեց թէ Փէթէն անզգայ չէր, երբ Գերմանները պատանդներ առին, թէ ան նամակ մը գրելով Հիթլէրի, յանձն առած էր սահմանագիծը երթալ, ինքզինքը իբրեւ պատանդ առաջարկելու համար: Ասոր վրայ Գերմանիոյ վարչապետութեան մէկ ներկայացուցիչը հաւաստած էր թէ այլեւս գնդակահարութիւններ պիտի չըլլան:

Երդուեալ մը հարցուց թէ Փէթէն իսկապէս գնա՞ց սահմանագիծը եւ իրաւցնէ նոր գնդակահարութիւններ չեղա՞ն: Ուրիշ մը հարցուց թէ ի՞նչ դիրք բռնեց Փէթէն, Շաթոպրիանի պատանդներուն գնդակահարութեան առթիւ: Փաստաբանը պատասխանեց թէ աւելի վերջը պիտի խօսի այդ մասին: Յետոյ խօսք դարձաւ Լավալի մասին, հասկնալու համար անոր ազդեցութիւնը Փէթէնի վրայ: Վկան ըսաւ թէ Լավալ «ցած բնաւորութեան տէր մարդ մըն է, անընդունակ քաջութեան եւ խանդավառութեան»: Իր կարծիքով, Ազգ. Ժողովը կանոնաւոր էր՝ ձեւականօրէն: Նոյնպէս Փէթէն իրաւունք ունէր գործադրելու օրէնսդիր իշխանութիւնը, բայց չարաչար գործածեց այդ իրաւունքները, անվերջ երկարաձգելով փոխանցման շրջանը:

Ծերակոյտին նախագահը դուրս ելած ատեն Փէթէն ողջունեց զայն, ինչ որ մասնաւոր ուշադրութիւն գրաւեց:

# Ցաւոտ վկաներ եւ միջադէպ մը

Հինգերորդ վկան էր Լուի Մառէն, Նանսիի երեսփոխանը եւ մեր բարեկամը (74 տարեկան), որ արտայայտուեցաւ շեշտակի, առանց բառերը ծամծմելու: Միշտ «ամբաստանեալը» կ'ըսէր: Իր գլխաւոր միտքն էր ապացուցանել թէ Փէթէն զինադադար խնդրելով բռնաբարած էր Ֆրանսայի խօսքը: «Առաջին անգամ էր որ այս տեսակ բան կը պատահէր մեր մէջ»: Ինք միշտ հակառակ եղած է զինադադարին, զոր անպատուութիւն կը նկատէր: Իր կարծիքով, զինադադարը պարտադրուեցաւ զօրականներուն կողմէ ոչ թէ զինուորական, այլ ներքին պատճառներով:

— «Մենք յանձն առած էինք անջատ հաշտութիւն չկնքել: 1918ին այդպիսի դաշինք մը յաղթութիւն բերաւ մեզի, 1939ին Ֆրանսան միայն դրժեց իր խոստումին (1940 մարտ 28ի անգլեւ-Ֆրանսական դաշինքին). անշուշտ ոչ Ֆրանսան, այլ անոնք որ ստորագրեցին զինադադարը: Նախարարները կ'ուզէին որ համաձայնութիւնը յարգուէր. բայց մարէշալը... ըսել կ'ուզեմ ամբաստանեալը այդ մասին չէր մտածեր: Անձնատրութիւնը հրամանատարութեան գործ է, ամբողջական եւ առժամեայ կորուստ զոր զինուորական վարիչները պէտք է հրամայեն երբ անհրաժեշտ կը դառնայ: Բայց զինադադարը կառավարութեան գործ է: Վէկան կ'ըսէր թէ բանակին պատիւը թոյլ չի տար անձնատուր ըլլալ: Այս սպարապետը կ'ուզէր կառավարութեան վրայ ձգել իր պատասխանատուութիւնները. բայց երբ Փօլ Ռէյնօ ճշմարիտ ազնուութեամբ մը յանձն կ'առնէր նոյնիսկ հրաման տալու պատասխանատուութիւնը, զօրավարը նորէն կը մերժէր: Փէթէն կառավարութեան մէջ մտած օրն իսկ յայտարարած էր թէ երբեք պիտի չհեռանայ Ֆրանսայէն, իսկ Վէկան աւելի վճռական էր. «եթէ ոտքերուս շղթայ իսկ անցընեն, ես պիտի չհեռանամ երկրէն»:

Ուրիշ յայտարարութիւններէ վերջ, վկան ցաւ յայտնեց որ չէ պահուած 1793ի սահմանադրութեան այն յօդուածը որ կ'արգիլէ հաշտութիւն կնքել, ցորչափ թշնամին գրաւած է ազգային հողը, ոչ ալ 1793ի օրէնքը որ մահուամբ կը պատժէ ան որ կ'ուզէ բանակցիլ թշնամիին հետ, երբ ան չի ճանչնար երկրին ամբողջութիւնը:

Այս վկայութեան առթիւ ներս հրաւիրուեցաւ Ռէյնօ, ճշդելու համար թէ նախարարական խորհուրդին մեծամասնութիւնը իսկապէս հակառա՞կ էր զինադադարին: Լուի Մառէնի կարծիքով, զինադադարը պիտի մերժուէր 10ի դէմ 14 ձայնով. մինչդեռ Փօլ Ռէյնօ յայտարարեց թէ 13 հոգի զինադադարի կուսակից եղան, երբ Շօթան կ'առաջարկէր հասկնալ Գերմանիոյ պայմանները, եւ միայն վեց հոգի համաձայն էին իրեն, Հիւս. Ափրիկէ երթալու համար: Փոքր բանավէճ մը ծագեցաւ երկուքին միջեւ, եւ Մառէն պահանջեց որ Գերագոյն Ատեանը կանչէ ներկայ նախարարները եւ ճշդէ այս պարագան: Շատեր կը ծիծաղէին այս տեսարանին վրայ, մարէշալ Փէթէնն ալ միասին, իսկ փաստաբանները յաղթական երեւոյթ մը ունէին:

Ուրիշ միջադէպ մը,— վեցերորդ վկան, Արման Կազէլ, կցորդ Մատրիտի Ֆրանսական դեսպանատան, յայտարարած էր թէ Փէթէն Մատրիտի դեսպան եղած ատեն իրեն ցոյց տուած էր ցանկերը այն նախարարներուն զոր պիտի առնէր, եթէ իշխանութեան գլուխ անցնէր: Բոլորին մէջ ալ կ'երեւար Լավալի անունը: (Բայց վկան այն կարծիքը չունի թէ մարէշալը կը դաւադրէր Հանրապետութեան դէմ): Փէթէն լսած ըլլալով այս յայտարարութիւնը, երբ սրահէն դուրս կ'ելլէին, յանկարծ կանգ առաւ եւ բարկութիւնը թափեց Կազէլի վրայ: «Ուրեմն դէշ տպաւորութիւն կրած ես Մատրիտի դեսպանութենէս, այնպէս չէ՞»: Ծերունին երթալով կը բորբոքէր, եւ փաստաբանները հազիւ կրցան հանդարտեցնել:

## Վերջնագիր Ճափոնի

Մ. Նահանգներու, Անգլիոյ եւ Չինաստանի կառավարութիւնները վերջնագիր մը ուղղեցին Ճափոնի, պահանջելով անպայման անձնատուր ըլլալ, հակառակ պարագային պիտի քանդուի: Վերջնագիրը կը պարունակէ միացեալ յայտարարութիւն մը, ստորագրուած՝ նախագահ Թրումընի, Չըրչիլի եւ Չանկ Քայ Չէքի կողմէ: Այս լուրը հաստատեց Թոքիոյի անթենը, աւելցնելով թէ Ճափոն տրամադիր է դադրեցնելու պատերազմը, եթէ Մ. Նահանգները բարեփոխեն պայմանները, համաձայն Ատլանտեանի դաշինքին: Յայտարարութիւնը կ'ըսէ թէ Երեք Մեծերը վճռական հարուածը պիտի տան, ամբողջովին գործադրելով իրենց զինուորական ուժը, ինչ որ պիտի նշանակէ Ճափոնի անխուսափելի եւ կատարեալ կործանումը: Կ'ըսուի թէ Ճափոնի դերիշխանութիւնը պիտի սահմանափակուի միայն բուն երկրին մէջ եւ քանի մը մանր կղզիներու վրայ:

Խ. Միութիւնը տեսակ մը միջնորդի դեր պիտի կատարէ: Իրականին մէջ ան ալ համաձայն է վերջնագրին: Մինչ այս մինչ այն, ռմբակոծութիւնները կը շարունակուին անընդհատ եւ անխնայ, Ճափոնի գլխաւոր քաղաքներուն վրայ:

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

Յուզումս հազիւ զսպած, դանդաղ քայլերով կը հետեւիմ Տիկին Ահարոնեանին, կը մտնեմ հիւանդին պառկած սենեակը: Տիկինը «Աւետիք ջան»ով կը յայտնէ Փարիզէն այցելութեան եկած ըլլալս՝ ընկերներէն եւ բարեկամներէն բերած կարօտի բարեւներով: Դանդաղ շարժումով մը հազիւ կը բարձրացնէ գլուխը, լայն նայուածք մը կը նետէ երեսիս, շրթունքներու քանի մը շարժումներ — ը. ր. ը. եւ ուրիշ ոչինչ: Իր արտայայտութեան նշաններէն կը դժուարանամ ըսել՝ հասկցա՞ւ...

Թարմ դիմագծով եւ առողջ սիրտով, բայց հիւանդ մարմնով անկողնին գամուած կը մնայ կռնակի վրայ: Դժուարաւ կը շարժի: Վերջին կաթուածը ծանր ազդած է: Տիկին Ահարոնեանի գուրգուրանքը, բժիշկներու խնամքը կատարեալ են եւ յուսադրիչ: Առողջապահական պայմանները նպաստաւոր են, մանաւանդ բնակարանի յարմարութիւնը՝ կանանչազարդ ծառերով եւ ծաղիկներով պարտէզը, օդաւէտ սենեակներով զոր սիրայօժար եւ ձրիաբար տրամադրած է Պ. Հայկ Զաթիկեանը:

Քանի մը բոպէի տխուր ու լուռ նայուածքներու փոխանակումէ մը վերջ, հիւանդին հանգիստը չխանգարելու մտահոգութեամբ կը մեկնիմ, ցանկանալով կատարեալ առողջութիւն:— Հ. Զ.

## ՀԱՅ ԱՐԻ, ԱՐԵՆՈՒՇՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍԸ

ՄԱՐՍԷՅԼ, (Յապաղած) 20 Յուլիս.— Հայ Արիներու եւ արենուշներու երեկոյթը տեղի ունեցաւ Պօմոնի Սինէմա Ֆլորիայի ընդարձակ սրահին մէջ, ի ներկայութեան երկսեռ բազմութեան մը, ի նպաստ ամառուան բանակումի գոյքերու գնումին, Յուլիս 16ին: Բեմին ճակատը զետեղուած էր Արիներու նշանաբանը, «Միշտ պատրաստ»: Հանդէսի պատրաստութիւնը տքնաջան աշխատութեան մը արդիւնքն էր. եւ ներկաները խանդավառ ծափերով ողջունեցին իւրաքանչիւր պատկերը:

Արիներու առաջնորդը, Պ. Զաւէն Միլտոնեան ամբողջ հանդէսի տեւողութեան արժեցուց իր հանդամանքը եւ արժանացաւ ջերմ գնահատանքի, նոյնպէս Արենուշներու պետուհին, Տիկ. Մանուշ Մարտիրոսեանը: Բացումը կատարուեցաւ Մարսէյեզով: Հանդէսին կը մասնակցէին նաեւ շրջանի զանազան խումբերը: Ս. Ժէրոմի խումբը իր սկաուտական խաղով, Պօմոնի «Եփրատ» խումբը բուրգի տեսարանով արժանացան կրկնակի ծափերու: Գեղեցիկ էին նոյնպէս Թիրոլեան եւ չինական պարերը, հայկական հարսանիքը իրենց տարազներով: Ներկայացուեցան երկու զաւեշտներ «Տարօրինակ Սափրիչը» եւ «Տէրն ու Ծառան», որոնք կուշտ ու կուռ խնդացուցին ներկաները: Ո՞ր մէկը թուել, բանակի խարո՞յկը թէ ինքնատիպ պարերը, խմբերգներն ու մեներգնե՞րը օրիորդներու: «Յառաջ»ի ծաւալը շատ փոքր է եւ զանց կ'առնեմ մանրամասնութիւնները: Պ. Զաւէն համառօտակի պարզելով սկաուտական շարժումին պատմութիւնը, հրաւիրեց ծնողները արձանագրել իրենց զաւակները այդ կազմակերպութեան մէջ, որպէսզի անոնք դաստիարակուին հայ սկաուտի կրթութեամբ եւ սկզբունքներով: Ապա ներկաներու փափաքով բեմ բարձրացաւ Պ. Յ. Նիկողոսեան որ կոչ ըրաւ օժանդակել եւ քաջալերել սկաուտներու կազմակերպութիւնը, որպէսզի նոր սերունդը ֆիզիքապէս ըլլայ տոկուն, չարքաշ եւ բարոյապէս բարձր: Հազիւ իր խօսքը լրացուցած, ներկաները սկսան նուէրներ տրամադրել եւ անմիջապէս գոյացաւ 37.700 ֆրանքի գումար մը, յառաջիկայ բանակումին համար վրաններ եւ զանազան կազմածներ գնելու: Խոստացան յառաջիկային եւս օժանդակել սկաուտական բոլոր ձեռնարկներուն, ժամը գիշերուան մէկը անցած էր, սակայն ներկաները չէին ուզեր սրահէն եւ ստեղծուած տաքուկ մթնոլորտէն բաժնուիլ:

Կը յուսանք թէ մեր Արիները աւելի յաճախ առիթներ պիտի ստեղծեն նման գեղեցիկ հանդէսներ կազմակերպելով: — Թղթակից

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՊԱՆԵԽՕ - ՔԱՇԱՆ.— ԱԶԳ. ՄԻՈՒԹԵԱՆ (Հ. Ա. Ճ.) մասնաճիւղին դաշտահանդէսը, այս կիրակի, 5 Օգոստոս, առտուան ժամը 10էն մինչեւ իրիկուն:

ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ, Հ. Յ. Դ. Շավիլի «Արղութեան» խումբը այս տարի եւս կազմակերպած է ուխտագնացութիւն մը Իշխան Արղութեանի Շիրիմին, Շավիլի գերեզմանատունը, այս կիրակի, ժամը 3ին: Կառախումբ Մոնփարնասէն ժամը 2.20, Սէն Լազարէն 1.57 — 2.27, կէս ժամը անգամ մը:

ԴՊՐՈՑԱԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Շավիլի անտառին մէջ (գերեզմանատան մօտ) Կիր. կէս օրէ վերջ: Երգ, արտասանութիւն մանուկներու կողմէ, «Րաֆֆի» երգչախումբ, պարեր հայկական եւ եւրոպական նուագով: Կերուխում: (Երկաթուղի Մոնփարնասէն):

Le Gérant : H. AGONEYAN
Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme - 13e

